## Անգլիա պիտի վերազինուի

Գ. Հէնտըրսէն Փարիզի մէջ երկարօրէն խորհրդակցեցաւ արտաքին նախարարին հետ, զինաթափութեան խորհրդաժողովի մասին: Համաձայնութիւն գոյացաւ մայիս 29ին գումարելու խորհրդաժողովը: Ֆրանսայի տեսակէտը կը մնայ անփոփոխ.— ընդդիմանալ որ եւ է համաձայնութեան որ կը ձգտի կրճատել Ֆրանսայի ապահովութիւնները, միեւնոյն ատեն վերազինուելու իրաւունք տալով Գերմանիոյ:

Գ. Պոլտուին, Անգլիոյ փոխ — վարչապետը, առջի օր ճառ մը խօսելով պահպանողական կիներու ընկերակցութեան համագումարին մէջ, յայտարարեց.

— Եթէ պետութիւնները չյաջողին համաձայնութեան մը յանգիլ, մասնաւորապէս օդանաւային ապառազինութեանց կրճատման համար, Անգլիա չպիտի չարունակէ անտարբեր մնալ եւ պիտի ջանայ իր օդանաւային սպառազինութիւնը հաւասարեցնել ամէնէն զօրաւոր պետութեան մակարդակին: Կը խնդրեմ կատարելապէս վստահիլ կառավարութեան, ազգային պաշտպանութեան ճակատին վրայ: Մենք ալ Մեծն Բրիտանիոյ մայրերուն չափ կ'ուզենք որ մեր զաւակները չտեսնուին օր մը պատերազմի բռնուիլ, մենք անկարելին կը փորձենք, փրկելու համար Եւրոպայի խաղաղութիւնը, մեր երկրին ապահովութիւնը եւ պատիւը:

⁂ Հիթլէր մասնաւոր պատուիրակ մը ղրկած էր Լոնտոն, զինաթափութեան մասին խորհրդակցելու համար: Թերթերը կը գրեն թէ պատուիրակը վերադարձած է ձեռնունայն: Այս առթիւ պատուիրակը յայտարարեց թէ Գերմանիոյ դիրքը երբեք չէ փոխուած եւ թէ անոր պահանջները նուազագոյն ծրագիրը կը ներկայացնեն:

### ԻՆՉ ԷՐ ՍՊԱՆՆԱԾ ԿԻՆԸ ...

Անցեալ օր սարսափելի ոճիր մը գործուեցաւ Լոնտոնի մէջ: Ազգայնական երեսփոխան Ֆիլիփ Անտոյի ազգականը, Միչէլ, սարսափահար կը հաղորդէր թէ իր 19 տարեկան կինը սպաննուած է անծանօթներու կողմէ: Ոստիկանութիւնը քննութեան ձեռնարկեց եւ պահ մը կարծուեցաւ թէ նորէն քաղաքական ոճիր մըն է որ կը գործուի:

Այժմ լուսաբանուած է գաղտնիքը: Միչէլ երկու ժամ անընդհատ հարցաքննուելէ յետոյ, առջի օր խոստովանեցաւ թէ ինք սպաննեց կինը, իբրեւ հետեւանք բուռն վէճի մը: Պատճա՞ռը,— կինը պէտք եղածին չափ տաք չէր եւ միշտ կոխ կ'ունենային: Բայց պատմութիւնը բոլորովին պարզ չէ. որով — հետեւ Միչէլ 800,000 փրանքի ապահովագրած էր իր կնոջ կեանքը, եւ յատկապէս ճշդած էր թէ սպանութեան պարագային ալ պիտի ստանայ ապահովագրութիւնը: Երկրորդ ծանրացուցիչ պարագայ մըն ալ այն է որ վերջերս նորոգել տուած էր այն հրացանը որով սպաննեց կինը:

Ամուսնութիւնը կատարուած էր նամակագրութեամբ: Միչէլ բնակարան էր վարձած ամայի վայր մը, որպէսզի ենթադրել տայ թէ թափառաշրջիկ մը կատարած է սպանութիւնը: Զոհը վերջերս իր քրոջը կը գրէր թէ կը վախնայ որ սպաննուի: Ոճրագործին հայրը ընդհանուր դատախազ է Լոնտոնի մէջ: Երբ իմացաւ թէ սպանութեան մեղքը իր զաւակին վրայ կը ծանրանայ, 15 օրուան արձակուրդ խնդրեց: Միչէլ լռանոտ է:



### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Թագուհի Վարպետեան, Տէր եւ Տիկին Ջաւէն Վարպետեան կը ծանուցանեն թէ ողբացեալ ԿԱՐԱՊԵՏ ՎԱՐՊԵՏԵԱՆի մահուան քառասունքին առթիւ Հոգեհանգիստ տեղի կ'ունենայ այսօր, կիրակի Պատարագէն վերջ Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ:

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ Հայր. Միութեան Փարիզի մասնաճիւղի ընդհանուր ժողովը այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, 119, Ավընիւ տ'Իթալի, Մէթրօ՝ Պլանշի քովի սրճարանը:

Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն ներկայ ըլլալ այս խիստ կարեւոր ժողովին:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Սելանիկէն Նշան Աբրահամեան կը փնտռէ իր հօրեղբայրը՝ բընիկ կեսարացի Գէորգ Աբրահամեանը, որ աւելի քան քսան տարիէ ի վեր Լոնտոն կը բնակի: Յիշեալին հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Ամերիկեան Բօլէճի հասցէով, Խարիլաօս, Սելանիկ:

### ՕԾՈՒՄ ՇԱՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ

Ի գիտութիւն հայ հասարակութեան կը ծանուցանենք թէ Շավիլի նորակառոյց մատրան օծման եւ անուանակոչութեան սրբազան արարողութիւնը տեղի կ'ունենայ յառաջիկայ Հոգեգալստեան Բ. օրը, 21 Մայիս Երկուշաբթի օր: Փարիզի հոգեւոր հովիւ Վռամշապուհ եպսկ. հանդերձեալ է Ս. Պատարագ մատուցանել եւ օծել եկեղեցին:

Սկզբ. ժամերգութեան ժամը 9ին:

Կը հրաւիրենք եկեղեցասէր հաւատացեալները ներկայ գտնուիլ Օծման Սուրբ արարողութեան եւ այս առթիւ կը յայտարարենք թէ Եկեղեցւոյս կնքահայրութեան համար ենթէփափաքողներ կանխրնան դիմել Վարչութեան: 4, rue des Trois Champtiers. Chaville (S. et O.)

(Կնիք)



## Սեբաստացի ՄՈՒՐԱՏի յիշատակին

Հ.Յ.Դ. Իսի լէ Մուլինոյի ՄՈՒՐԱՏ խումբը հովանաւորութեամբ ՋԱՒԱՐԵԱՆ Կոմիտէի կը տօնէ ՄՈՒՐԱՏԻ մահուան 15 ամեակը եւ իր ծննդեան 60 ամեակը այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, 2 rue Alexandre Guilmant, Սալ Մառի Տէլմայի մէջ, Մէտոտնի կայարանին դիմացը:

Կը նախագահէ ընկ. Ա. ԽԱՏԻՍԵԱՆ

Կը խօսին ընկերներ՝ ԱԲ. ԳԻՒԼԽԱՆԴԱՆԵԱՆ եւ Ա. ՋԱՄԱԼԵԱՆ

Յարգանքի խօսք ընկ. ՄԻՔ. ՎԱՐԱՆԴԵԱՆի յիշատակին:

կ'արտասանեն ընկ. Օ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ, ԾԱՏՈՒՐՕՖ եւ Օր. ՕՍՄԱՆՃԵԱՆ,

կ'երգեն՝ Օր. ՀՌ. ԿՆԵԱԶԵԱՆ եւ Պ. ԽՕ. ԻՒՍԿԻՒՏԱՐԼԵԱՆ

կը նուագէ՝ Թառիստ ԺՕՐԺ.

Ճոխ եւ խնամուած գեղարուեստական բաժին:

Հաղորդ. միջոց.— Առնել հանրակառք թիւ 23 եւ 32 եւ իջնել Փէրմ տ'Իսի, ուր կը սպասեն առաջնորդներ: Շոգեկառք Մոնփարնասէն եւ իջնել Մէտոտնի կայարանը:

Տախսերու համար կը գանձուի 3 փրանք:



Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13e)

գնդակահարման ներկայ ըլլալու, մասնակցելու համար․․․

«Այսուհետեւ խօսքերու պէտք չկայ։ Դիկտատուրա հռչակեցէք եւ մահապատիժը վճռելէն վերջ, մինչեւ անգամ անոր դիակին հելլենական հողին մէջ թաղուիլը արգիլեցէք»․․․

## Տիկին Սթավիցքի գիտէ՞ր իր «գլխաւոր»ին գաղտնիքները

Հարցաքննիչ դատաւորը առջի օր դէմ դիմաց հանեց Տիկին Սթավիցքին եւ հեռախօսի պաշտօնեայ մը, Օր․ Ֆորմիս։ Տիկինը միշտ կը յայտարարէ թէ ինք տեղեկութիւն չունէր իր «գլխաւոր»ին առեւտրական գործերէն։ Արդ, Օր․ Ֆորմիս պատմեց թէ դեկտեմբեր 20ին հեռախօսը հնչեց Պիարիցի մէկ արձարանէն, Օթէլ Քլարիճ (Փարիզ), ուր կը բնակէր Սթավիցքի։ Խօսակցութիւնը Տիկին Սթավիցքիի հետ էր, իսկ խօսողը՝ Թիսիէ, Պայոնի վարկի դրամատան տնօրէնը, որուն ձայնը կը ճանչնար ինք։ «Ականջ դրի, որովհետեւ թերթի մը մէջ կարդացի թէ քննութիւն կը կատարուի Պայոնի դրամատան անկանոնութեանց եւ Թիսիէի մասին։ Այս կերպով կրցայ լսել խօսակցութեան մէկ մասը։ Պիարիցէն խօսողը կ՚ըսէր․— «Անհետացուցինք փաստաթուղթերուն կարեւոր եղածին չափ մեծ մասը»։ Տիկին Սթավիցքի գրեթէ ոչինչ ըսաւ․ միայն «ահ, ա՞հ» գոչեց․ նեղսիրտ երեւոյթ մը ունէր եւ ծանօթ կ՚երեւար անցուդարձին։ «Ուրեմն ա՛լ ընելիք չունինք», ըսաւ։ Խօսակիցը պատասխանեց․— «Այո, վերջացաւ»։ Այս խօսքերը դրոշմուած են յիշողութեանս մէջ»։

Տիկին Սթավիցքի ուրացաւ այս դէպքը, յետոյ յարեց․— Թերեւս պատասխանած եմ ամուսնիս եղած հարցումի մը։ Օր․ Ֆորմիս պնդեց, աւելցնելով թէ դեկտ․ 23ին էր որ Սթավիցքի անհետացաւ, իսկ ինք անմիջապէս հարցաքննութեան կանչուեցաւ ոստիկանութեան կողմէ։

⁂ Ութ տարուան ընթացքին 23րդ անգամն ըլլալով, առջի օր յետաձգուեցաւ Սթավիցքիի դէմ բացուած առաջին դատը, որուն ենթականերէն մէկը միայն ողջ է․․․

## Տօրիօ կը մեղադրուի Մոսկուայի կեդրոնէն

Գ․ Միջազգայինի կեդրոնը (Կոմինթէրն, Մոսկուա), իր վճիռն արձակեց երիտասարդ համայնավարի մը, Տօրիօյի դէմ, որ պայքար բացած է Ֆրանսայի կեդր․ կոմիտէին դէմ։ Յայտարարութիւնը կ՚ըսէ թէ ապրիլ 23ին Կոմինթէրնը առաջարկած էր Տօրիօյի՝ դադրեցնել ներքին պայքարը եւ խնդիրը յանձնել կեդրոնի քննութեան։ Տօրիօ համակերպած չըլլալով, Կոմինթէրնը զայն կը ձաղկէ իբրեւ անջատական, կը նախեցնէ ամբաստանեալի աթոռի վրայ՝ ինչպէս «հակայեղափոխական Թրոցքին», կը դրկէ Կոմինթէրնին պաշտպանութենէն եւ «կ՚արտօնէ» Ֆրանսայի կեդր․ կոմիտէն ձեռք առնել անհրաժեշտ միջոցները, պահպանելու համար կուսակցութեան միասնականութիւնը։

Կեդր․ Կոմիտէն անմիջապէս նիստ գումարելով, պահանջեց որ Տօրիօ համակերպի կուսակցութեան քաղաքականութեան, դադրեցնէ իր պայքարը, կուսակցութեան հակակշռին ենթարկէ իր թերթը (էմանսիփասիոն) եւն․։

Այս բոլորը կ՚ապացուցանեն թէ վտարումը անխուսափելի է։

ՖՈՒԹՊՈԼԻ ՄՐՑՈՒՄ

Չորեքշաբթի օր Փրակայի մէջ 40,000 հանդիսատեսներու ներկայութեան Չեխ ազգային խումբը պարտութեան մատնած է Անգլիոյ ֆութպոլի ներկայացուցչականը 2 — 1ով։ Այս երկրորդ պարտութիւնն է որ Անգլիացիք կը կրեն կեդր․ Եւրոպայի մէջ։

---



















ՕԾՈՒՄ ՇԱՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻՈՑ

*Ի գիտութիւն հայ հասարակութեան կը ծանուցանենք թէ Շավիլի նորակառոյց մատրան օծման եւ անուանակոչութեան սրբազան արարողութիւնը տեղի կ՚ունենայ յառաջիկայ Հոգեգալստեան Բ․ օրը, 21 Մայիս Երկուշաբթի օր։ Փարիզի հոգեւոր հովիւ Վասմշապուհ եպսկ․ հանդերձեալ է Ս․ Պատարագ մատուցանել եւ օծել եկեղեցին։*

*Սկզբ․ ժամերգութեան ժամը 9ին։*

*Կը հրաւիրենք եկեղեցասէր հաւատացեալները ներկայ գտնուիլ Օծման Սուրբ արարողութեան եւ այս առթիւ կը յայտարարենք թէ եկեղեցւոյ կնքահայրութեան համար եթէ փափաքողներ կան կրնան դիմել վարչութեան* 4, rue des Trois Champtiers, Chaville (S. et O.)

(կնիք)

ԱԶՆԻՒ ՔԻՒՓՃԵԱՆ

եւ

ԱՐԱՄ ՏՕՆԷԼԵԱՆ

Ամուսնացած

*Պուա Քոլոմպ* 12 *մայիս*, 1934

ՆՈՅԵՄԻ ՏՕՆԷԼԵԱՆ

եւ

ԱՐՄԵՆԱԿ ՎԱՐԱԳԱՃԵԱՆ

Ամուսնացած

*Պուա Քոլոմպ* 12 *մայիս*, 1934

ԿԱՐԵՒՈՐ

*Ծանօթ օրիորդ մը կը ստանձնէ ֆրանսերէնի, անգլիերէնի, գերմաներէնի եւ հայերէնի դասեր տալ տուներու մէջ։ Դիմել Ե․ Յարութիւնեանի 13,* rue d'Orsel, *Փարիզ (18), Մեթրօ* Barbès.

















**Le Gérant: H. STEPHAN**

**17, Rue Damesme, PARIS (13e** **Imprimerie A. DER (AGOPIAN)**

